գծին վրայ կը դրուի Լօզանի դաշնագրին հետ (1923) որ Թուրքիան ազատեց ռազմական զօրքի պահումէն, եւ Մոնթրէօյի պայմանագրին հետ (1935) որ վերահաստատեց Թուրքիոյ ամբողջական հսկողութիւնը Տարտանէլի վրայ։

Անտիոքի համաձայնութեամբ իշխանութեան բացարձակ հաւասարութիւն կը հաստատուի Ֆրանսայի եւ Թուրքիոյ միջեւ, պահպանելու համար ներքին օրէնքը եւ բարեկարգութիւնը Սանճաքին մէջ։ Իւրաքանչիւր երկիր 2500 զինուոր պիտի պահէ Սանճաքին մէջ։ Թրքական զօրքի մուտքը ինքնին պատկումը կը համարուի Թրք. տենչերու։ Սակայն եւ այնպէս, մինչդեռ Աթաթիւրքի ուրիշ յաղթութեանց առթիւ շքեղ ցոյցեր կը կատարուէին, այս անգամ Ալեքսանտրէթի շրջանին մէջ ձեռք բերուած յաղթութիւնը կ՚ընդունուի հանդարտութեամբ, իբրեւ բնական արդիւնքը Թուրքիոյ անվիճելի իրաւունքներուն։

## Ճոր. Ֆրանքօ կ՚ընդունի Անգլիոյ առաջարկը

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ Ճօր. Ֆրանքօ պատրաստակամութիւն յայտնած է ընդունելու անգլիական առաջարկը՝ կամաւորներու յետս կոչման եւ չէզոք նաւահանգիստի մը հաստատման մասին։ Ծուտով հաւանութիւն պիտի յայտնուի որ միջազգային յանձնաժողովը երթայ տեղին վրայ ցուցակագրէ օտար կամաւորները։

Անգլիոյ երեսփ. ժողովին երկուշաբթի օրուան նիստին մէջ, վարչապետը բացակայ ըլլալով, ելմտական նախարարը նպաստաւոր տեղեկութիւններ հաղորդեց կացութեան մասին։ Այս առթիւ հաստատեց թէ առաջարկուած է Ալմերիա նաւահանգիստը գործածել, օտար առեւտրական նաւերու համար, որպէսզի յարձակման չենթարկուին։

Մինչ այս մինչ այն, Սպանիոյ ազգայնականները կը շարունակեն յառաջ խաղալ։ Հեռագրի մը համաձայն, միայն 50 քիլոմեթր հեռու են Վալենցիայէն, որ մայրաքաղաքն է հանրապետական կառավարութեան։ Ուրիշ ճակատներու վրայ եւս կռիւը կը շարունակուի մոլեգնօրէն։

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ պաշարման վիճակը առատկացաւ, իբրեւ հետեւանք նոր ընդհարումներու։ Ինը Արաբներ սպաննուեցան Պաղեստինի զանազան մասերուն մէջ, վերջին 24 ժամուան ընթացքին։ Պաշարման վիճակ հրատարակուած է նաեւ Եաֆայի եւ Թէլ Ավիվի միջեւ։ Հաղորդակցութիւնները խզուած են երկու քաղաքներուն միջեւ որոնք այնքան մօտ են իրարու։ Անցեալ շաբթու հրեայ երիտասարդ մը կախուած ըլլալով, Հրեաները կ՚ուզեն վրէժ լուծել։

30.000 — 40.000 ՀՈԳԻ ԳՆԴԱԿԱՀԱՐՈՒԱԾ ԵՆ Խ. Միութեան մէջ, ծանօթ մաքրագործումներու հետեւանքով, եթէ հաւատանք ռուս փախստական զօրավարին՝ Լուշկովի, որ Մայր. Արեւելքի Չեկային վարիչն էր եւ Ճափոն կը գտնուի այժմ։ Զօրավարը կ՚ըսէ թէ Սթալին պատերազմ կը պատրաստէ Ճափոնի դէմ, թէ 400.000 կարմիր զինուորներ կը գտնուին Մայր. Արեւելքի մէջ, 2000 օդանաւերով եւ 90 սուզանաւերով ևն.։

ՀԱՑԻ ՏԱԳՆԱՊԸ փարատած է Իտալիոյ մէջ, համաձայն Մուսոլինիի յայտարարութեան։ Առաջնորդը գաշտերին երթալով ինք ալ ցորեն քաղեց եւ այս առթիւ ճառ մը խօսեցաւ։

ԱՅՆ ԶԻՆՈՒՈՐՆԵՐԸ, որոնց ծառայութեան շրջանը կը լրանայ 1938 հոկտ. 15ին, կանուխ պիտի արձակուին այս տարի — օգոստոս 18ին, եթէ բերդի մէջ կը ծառայեն, եւ հոկտեմբեր 1ին՝ եթէ ներքին զօրագունդերուն մէջ կը գտնուին։

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ բնոնակառք մը հանրակառքին ընդհարեցաւ երկուշաբթի օր։ Երեք հոգի մեռան, եօթը հոգի վիրաւորուեցան։ Բեռնակառքին վարիչը փախաւ։

ՍՈՒԶԱՆ ԼԸՆԿԼԷՆ, թէնիսի ախոյեանը, որ համաշխարհային համբաւ կը վայելէր, մեռաւ անցի օր։ Թերթերը սիւնակներ կը նուիրեն իր յիշատակին։ 39 տարեկան էր եւ 12 տարեկանէն թէնիսի նուիրուած։

ՍՈՔՈԼՆԵՐՈՒ ՏՕՆԸ մեծ խանդավառութեամբ կատարուեցաւ Փրակայի մէջ։ Կը մասնակցէին 30.000 մարդիկներ եւ 17.000 աղջիկներ։

«ՅԱՌԱՋ»ի ՑՐՈՒԼԻՍ ՔԻ ԹԻՒԸ սպառած ըլլալով, կը խնդրուի մեր գործակալներէն (միայն գործակալներէն) մեզի ղրկել իրենց աւելցած թիւերը, եթէ ունին։





### Փարիզ

ՇԱՎԻԼԻ «Արգութեան» խումբի ժողովը 10 Յուլիս, կիրակի երեկոյ ժամը 9ին սովորական ճաշարանին։

### Գաւառ

ԼԱՍԻՈԹԱՅԻ «Խաժակ» խումբի ընդհ. ժողովը 7 Յուլիս, Հինգշաբթի, երեկոյ ժամը 8 30ին սովորական ճաշարանին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԼԻՕՆԻ «Մուսա-Լեռ» խումբի ընդհ. ժողովը 8 Յուլիս, Ուրբաթ, երեկոյեան ժամը 9ին. 15 Quai Victor Augagneur սրճարանի ներքին սրահը։



ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

«Մատենաշար Ռամկավար» թիւ 2
Հրատարակութիւն Հայ Կամ. եւ Մարտիկներու Միութեան

## ԼԵՌՆԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Գրեց՝ ՀՐԱՆՏ ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ

Այս գիտական խիստ արժէքաւոր ուսումնասիրութիւնը գործն է Հրանտ Փաստրմաճեանի, որ վերջերս անգլիերէն լեզուով լոյս տեսած է Վաշինկթընի մէջ։ Մեր համակրելի աշխատակիցը շատ պարզ եւ հասկնալի լեզուով կ՚ուսումնասիրէ լեռնային զանազան ռազմարուեստը — մանաւանդ Հայկականը — տալով անոնց շուրջ կատարուած զանազան նշանակալից դէպքեր, թուելով պատճառներ, թիւեր ու դէմքեր։

Հեղինակը պարզօրէն կը պարզաբանէ լեռնային հողամասերու իւրայատուկ կազմութիւնը ու անոնց դերը ռազմական գործողութիւններու վրայ։ Կը խօսի զանազան տեսակի կռիւներու մասին։ Կը պարզէ լեռնային երկիրներու պարենաւորման եւ փոխադրութեանց դժուարութիւնները, լեռնային յատուկ զօրամասերու կազմակերպութիւնը, քարերու գործը եւայլն։

Հայերէնի թարգմանուած այս գործը պիտի հետաքրքրէ անխտիր մեր նախկին ռազմիկները, նորակոչ զինուորներ, եւ ռահվիրայ ամբողջ հասարակութիւնը։

Գիրքը 100 էջէ աւելի, գեղեցիկ տպագրութեամբ եւ հարուստ պատկերներով զարդարուած է։

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ

Գրեց՝ ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

Երկու ստուար հատորներով ԼԴ+2479 էջով, գեղազարդուած 687 պատկերներով եւ վիմատիպ 16 բազմագոյն պատմական քարտէսներով պատկառելի գործ մը, որ ոչ միայն Կեսարիոյ եւ Շրջակայից պատմութիւնն է այլ՝ պատմութիւնը Փոքր Ասիոյ հայ գաղութներուն։ Կը պարունակէ համայնագիտական ծանօթութիւններ, տեղագրական, վիճակագրական, ազգագրական, մատենագրական եւ կենսագրական ամենահոյժ տեղեկութիւններ։

Նուազագոյն գինը 25 շիլին։ Փարիզի մէջ կը ծախուի Պ. Սարգիս Սադրեանի քով, 13 բիս Ալէ Լուզար, Փարիզ (9)։



### ԿԸ ՓՆՏՐՈՒԻ

— Մարաշցի Վարդան Գավաֆեան կը փնտռէ իր եղբայրը Հաճի Յարութիւն Գավաֆեան եւ քեռայրը Յով - հաննէս Տօնապետեան Կէմէրէկցի, որոնք 8 տարի առաջ կը գտնուէին Ֆրանսա, Վիէն։ Տեղեկացնել Վարդան Գավաֆեանի Mikropolis, Drama, (Grèce)։




Le Gérant : H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme — PARIS (13)

տուԹեանց փակումէն ի վեր։ Շաբաթ օր քանուորներ վար կ՚առնէին գմբէթ-ներուն եւ զանգակատան խաչերը,— իբրեւ նախաքայլ քանդումի։ Կեդրոնական գմբէթին վրայ դրուած մեծ խաչը վար կախուած է շղթայի մը ծայրէն։ Այս եկեղեցին վերջերս վերանորոգուեցաւ մեծագումար ծախքով, օրթոտոքս հաւատացեալներու զոհողութեամբ։ Յեղափոխութենէն ի վեր այստեղ կը պահուէր ժամանակակից նուիրական պատկեր մը (պատկեր), զոր ժողովրդական աւանդութիւնը կը վերագրէ Ղուկաս առաքեալին։ Այս մասունքին ճակատագիրը մեծ մտահոգութիւն կը պատճառէ հաւատացեալներուն. Եկեղեցին կը գտնուի Սթալինի ճամբուն վրայ որ իր ամառանոցը կ՚առաջնորդէ։ Սթալինի հակակրօնական առնչութիւնը կը սկսի Թիֆլիսէն, երբ դպրանոց կը յաճախէր։ Սակայն քանդումին գլխաւոր պատճառը այն է որ քրիստոնէական մեծ տօներուն առԹիւ եկեղեցին պաշարուած էր անհամար բազմութիւններով որոնք համբերութեամբ կարգի կը սպասէին, երկար արարողութեանց գոնէ մէկ մասը տեսնելու համար։

Այժմ Մոսկուայի մէջ բաց մնացած միակ մեծ եկեղեցին կը գտնուի Էլոխովսկայա եւ նոյնպէս վտանգուած է. Նովկորոտի շնորհազուրկ մետրապոլիտը, Սէրգէյ, որ 11 տարիէ ի վեր պատրիարքի պաշտօնը կը վարէր եւ կանոնաւորապէս կը պատարագէր փակուած եկեղեցիին մէջ, պաշտօնական մամուլին կողմէ կ՚ամբաստանուի իբրեւ գործակից Փաշական պետութեանց գործակալներուն։

## Նոր խռովութիւններ Պաղեստինի մէջ

Երուսաղէմէն կը հեռագրեն Թէ երկուշաբթի օր նոր դէպքեր պատահեցան Հայֆայի մէջ։ Սպաննուեցան 10է աւելի մարդիկ։ Աւելի մեծ թիւ մը կը կազմեն վիրաւորները, որոնց մէջ կը գտնուին անգլիացի սպաներ եւ զինուորներ։

Հայֆայի կեդրոնին մէջ Արաբները քարկոծեցին պահականոցը, ռումբ մը նետելէ վերջ համրակառքի մը վրայ որ լեցուած էր Հրեաներով։ Ոստիկանութիւնը կրակ բացաւ պարապ փամփուշտներով, եւ երբ ամբոխը մերժեց հեռանալ, անգլիացի նաւաստիներ յարձակում գործեցին սուիններով։ Նազարէթի մէջ ալ երկու ռումբեր նետուեցան հրէական համրակառքի մը վրայ։ Ռումբ նետուեցաւ նաեւ Երուսաղէմի հին քաղաքին վրայ։ Հեռագիր եւ հեռաձայնի թելերը կտրուած են շատ մը վայրերու մէջ։ Հայֆայի արաբական բոլոր խանութները փակուած են, իսկ բաց մնացած հրէական խանութները կը քարկոծուին, հակառակ ցամաքային եւ ծովային զինուորներու պաշտպանութեան։ Հայֆայի հարաւային մասին մէջ 300 Արաբներ յարձակեցան հրէական գաղութի մը վրայ, վիրաւորելով շատ մը բնակիչներ։ Թուլքարէմի մէջ ահաբեկիչներ սափրիչի մը խանութը խուժելով տեղն ու տեղը սպաննեցին ոստիկանական քննիչ մը, Արաբ, երբ կ՚ածիլուէր։

Այդ օրը Պաղեստին հասան Եգիպտոսէն ղրկուած օժանդակ զինուորներ։

Անգլիոյ երեսփ. ժողովին մէջ, պատասխանելով զանազան հարցումներու, գաղթային նախարարը հաւաստեց Թէ կառավարութիւնը ձեռք առած է բոլոր անհրաժեշտ միջոցները, կարգը հաստատելու համար եւ Թէ նոր զինուորներ պիտի ղրկուին։

## Նիւ Եորքէն Փարիզ 16 ժամ ... ժամէն

Ամերիկացի օդաչու մը, Հօուըրտ Հիւզ, որ միլիոններ դիզած է իբրեւ շարժանկարի արտադրիչ եւ որ անցեալ շաբթու ձեռնարկած էր աշխարհի շրջանը կատարելու, յաջողեցաւ կոտրել համաշխարհային մրցանիշը։ Օդանաւորդը Նիւ Եորքէն Փարիզ, Պուռժէի օդակայանը հասաւ 16 ժամ 31 վայրկեանէն, երկուշաբթի իրիկուն ժամը 4.51ին։ Նիւ-Եորք-Փարիզ առաջին ուղղակի Թռիչքն է այս։ Գնդ. Լինտպէրկ նոյն ճամբան կտրած էր 33 ժամ 20 վայրկեանէն, մինչ նոր ախոյեանը շահած կ՚ըլլայ 16 ժամ եւ 49 վայրկեան։

Այս յաղթանակը անհամբերութիւն պատճառեց Մ. Նահանգներուն մէջ։ Թերթերը սիւնակներով նկարագրութիւններ կը հրատարակեն։ Օդաչուին կ՚ընկերանան երկու օդակայեր, անթելի մեքենավարը եւ մեքենագէտ մը։ Ցանդուղն օդանաւորդները հանգստանալէ անմիջապէս վերջը, գիշերուան ժամը 1.24ին ճամբայ ելան դէպի Մոսկուա։ Իրենց Թռիչքին ժամանակ միջին արագութիւնը եղած է 353 քիլոմեթր 980։

*** Օդանաւով աշխարհի շրջանը կատարելու առաջին փորձը տեղի ունեցաւ 1924ին, երեք ամերիկացի սպաներու կողմէ, եւ տեւեց 175 օր։ Երկրորդ փորձը կատարեց գերմանական ցէփլինը, սաւառնելով 20 օր եւ 4 ժամ։ Երրորդը՝ 1931ին, (Ամերիկացիներ), 8 օր եւ 15 ժամ եւ 51 վայրկեան տեւողութեամբ։ Չորրորդը՝ 1933ին, (դարձեալ Ամերիկացի), 7 օր, 13 ժամ, 50 վայրկեան։

---

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՆԳԼԵԻՏԱԼԱԿԱՆ համաձայնութեան գործադրութեան մասին նոր տեսակցութիւն մը ունեցան Իտալիոյ արտաքին նախարարը եւ Հռոմի անգլիական դեսպանը։ Ճամբան բաւական հարթուած կը Թուի, քանի որ ընդհանուր համաձայնութիւն գոյացած է Սպանիոյ օտար կամաւորները ետ կանչելու համար։

ՍՊԱՆԻՈՅ օտար կամաւորներու յետս կոչման խնդիրը միշտ կը պարզենէ մեծ դժուարութիւններ։ Հակառակ գոյացած համաձայնութեան, կը կարծուի Թէ 3—5 ամիս պիտի տեւեն վերադարձի գործողութիւնները, եԹէ նոյնիսկ նոր բարդութիւններ չծագին։ Ամբողջ ծրագիրը, որ 2 750 000 անգլ. ոսկի պիտի արժէ, չի կրնար գործադրուիլ առանց Սպանիոյ երկու կառավարութեանց վերջնական հաւանութեան։

ԵՐԶՆԿԱՅԷՆ կը հեռագրեն Թէ ահռելի ողողումներ աւերեցին ամբողջ շրջանը։ Առաջին առԹիւ երեւան հանուեցան 19 մեռեալներ։

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ Գերմաններու հարցին առԹիւ, գերմանական մամուլը նորէն կրակ կը տեղայ չեխական կառավարութեան դէմ, անոր վրայ ձգելով ապագայ բոլոր պատասխանատուութիւնները։ Այս առԹիւ կը պահանջէ որ Անգլիա միջամտէ, եԹէ իրապէս խաղաղութիւն կ՚ուզէ։

ՃԱՓՈՆ վճռապէս մերժեց որ եւ է օտար միջամտութիւն՝ չինական պատերազմին մէջ։

ԻՐԱՆԵԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ (Պարսկաստան) պայմանագրութիւններ կնքեց երկու գերմանական ընկերութեանց հետ, երկաթի հանքեր շահագործելու համար Թէհրանէն 20 քիլոմեթր հեռու։ Մասնագէտներ 30 միլիոն մարք կը հաշուեն այս պայմանագրութեանց արժէքը։ Ռ. Միութենէն վերջ, Գերմանիա երկրորդ տեղը կը բռնէ Իրանի արտաքին առեւտուրին մէջ։

## ՖՐ. Կ ԽԱՉԻ ԿԱՅԱՆԻՆ Ա. ԽՈՒՄԲԻՆ ՄԵԿՆՈՒՄԸ

Ֆ. Կապոյտ խաչի վարչութիւնը կը խնդրէ մեզմէ ծանուցանել թէ մասնաճիւղերու կողմէ ընտրուած եւ պատրաստուած տղաքը պէտք է ներկայ ըլլան յառաջիկայ Ուրբաթ օր Յուլիս 15ին, ժամը 11ին Gare Montparnasse: Ընկերութեան կողմէ սպասուած է հաւաքուիլ Ancienne gare Hall d'entrée (մեծ սանդուղներէն բարձրանալով աջ կողմը)։

Տղաքը իրենց հետ պէտք է ունենան ԵՐԿՈՒ ԱՆԳԱՄ ճաշելու չափ ուտելիք։


































ԴԱՑԷՔ ՏԵՍԷՔ ԼԻՈՆԻ ՄԷՋ
Cinéma REXY
Cours Lafayette, angle Garibaldi

Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme — PARIS (13)

